Ատրպետ, (1912) Եզի պաշտամունքը Հին Հայաստանում.
Ազգագրական հանդէս, 23 (2). pp. 114-124.

# ԵԶԻ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԸ ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Ա Տ Ր Պ Ե Տ Ի

*Ներկայ թուականին «Հանդէս-Ամսօրեայի» Ա. համարում տպագրուեց իմ աշխատութիւնը «Դիրաքլարի» տաճարը վերնագրով, որը ենթադրել էի, թէ հին հեթանոսական մեհեան է և հաւանականաբար Եզի պաշտամունքին նուիրուած:*

*Յայտնի բան է 1500 տարուան գրական, չորս հազար տարուան արձանագրական և դարեւոր աւանդական պատմութիւն ունեցող մի ազգ, որի յիշատակարանների մէջ այս երկարատև շըրջանում ոչ մի տեղեկութիւն չի նկատուել, ծանր էր մի այսպիսի նորութեան մասին հարց բարձրացնելը և անչափ պատասխանատու: Բայց, ինչպէս ասինք, փաստերն ու իրերը իրենք ասպարէզ իջած, մեզ դրդեցին այս յանդուգն քայլն անելու և ցոյց տալու հայ բանասէրներին, թէ իրենց նախորդները բազմապիսի պաշտամունքների մէջ, ի թիւս այլոց ունեցել են և երկրագործութեան հովանաւոր, երկրամշակութեան աջակից և լծակից պաշտպան մի աստուածութիւն, նման եգիպտական Ապիսին, որի պաշտամունքը նկատելի է, որ տարածուած է եղել հին Հայաստանի այն բարձր սարահարթերում, որոնք անյիշելի դարերից ի վեր երկրագործութիւն են ունեցել և զբաղուել են յատկապէս հացահատիկների մշակութեամբ. ցորեն, գարի, հաճար, կորեկ, կտաւատ, սիսեռ, գլգլ և ուրիշներ:*

*Եթէ մեր նախնիքը ունեցել են Ապիսի պաշտամունքը, չէին կարող պաշտելի Եզի համար մեհեաններ չկանգնել, նրա համար քուրմերի յատուկ դաս չունենալ և նրանց միջնորդութեամբ կապ չը հաստատել այդ ուժեղագոյն էակի հետ, որը ժողովրդի սընունդ ու կեանքն էր պահպանելու: Ահա այս մեհեաններն և այդ մեհեաններից դուրս բերուած իրերն են, որ գալիս են ապացուցանելու, թէ, որքան որ տքնել են մեր հեթանոս և քրիստոնեայ պապերը ջնջել այդ պաշտամունքի հետքերը մեր երկրից, որքան որ ջանացել են իսպառ մոռացութեան մատնել նրանց գոյութիւնը, բայց իրենք՝ այդ պաշտամունքի առարկաները, թաղուած ու ծածկուած մի քանի տասնեակ դարերից ի վեր, հրապարակ են ի-*

ջել գիտութեան և պատմութեան նիւթ մատակարարելու և իրենց Եգիպտոսի Ապիսի հետ ունեցած խնամիութիւնը ապացուցանելու։ Եզը մեր մէջ պաշտուած է եղել խալդերի ժամանակ, բաբելական ամենահին քաղաքակրթութեան շրջանում։

Անշուշտ այս նիւթի մասին բանասէրների կողմից յիշատակութիւններ եղել են, միայն այնքան անորոշ կերպով են արտայայտուել, որ չէին կարող բաւարարել ժողովրդի պահանջին կամ ուշադրութիւն գրաւել։ Մեր պատմական Եզնիկ, Եզնակ, Եզիկ, Եզնուկ անունների մասամբ աղօտ նշանները կարող են մտքերը գրաւել, բայց այդ յատուկ անունները բաւական չեն կարող լինել դրական ապացոյցներով հաստատելու այն, ինչ որ մեզ տալիս են այսօր աւերակ մեհեաններից և պեղուած գերեզմաններից դուրս եկած իրական փաստերը։

Ա. Դեռ սրանից չորս տարի առաջ պ. Եր. Լալայեանի Գեղարքունի գաւառի Մրթղնիի ձորում կատարած պեղումը և բացած Եզի գերեզմանը մի մեծ ապացոյց է հայկական Ապիսի գոյութեան, բայց այդ առաջին քայլը չէր կարող այնքան հաւաստիութիւն ներշնչել, եթէ չգային յետագայ փաստերը։ Մրթղնիի ձորի արևելքից արևմուտք ձգուած շարքի ամենաարևելեան ծայրը, նկատուած բոլոր կուրգաններից ամենից բարձր կանգնած և ամենից ուշագրաւն եղել է Հայկական Ապիսի դամբարանը։ Ինչպէս նկարագրում է պեղումը կատարող ո. Երուանդ Լալայեանը (տես Ազգ. Հանդէս գիրք XVIII), դամբանը դաշտի մէջ 20 մետր տրամագծով և մի մետր բարձրութեամբ կանգնած է եղել դարերից ի վեր։ Սկզբում շատ բարձր է եղել դամբանը, բայց գիւղացիները նրա վրայի քարը կրելով ցածրացրել են։ Գերեզմանի պատերը դաշտի մակերևոյթից ցած են եղել, ունեցել է 6 մետր երկարութիւն, 2 1/2 մետր լայնութիւն և 4 մետր խորութիւն։ Պատերն անտաշ քարերով է շինուած եղել, առանց շաղախի և քարերով էլ ծածկուած։ Հետևաբար գործը շինուած է դեռ այն դարում, երբ մարդիկ կիրը չէին գտել։

«Այս ընդարձակ տարածութեան մէջ, գերեզմանի երկարութեամբ, հիւսիսային պատին կից, երեսը դէպի հարաւ, աջ կողքի վրայ պառկած էր մի մեծ եզան կմախք, որի գանգը վերցրի (№ 549)։ Գլխի մօտ ոչինչ չկար դրուած, իսկ պոչի մօտ երեք կաւէ ձագարաձև խողովակներ (№ 544—546) և մի խեցի (№ 547), որ շատ նման է այժմեան մեր գիւղերում և քաղաքներում գործածուող խնկանոցին։ Սրա մօտ գտնւում էր մի փոքրիկ, կաւէ արկղիկ, նշխերով զարդարուած... Ձագարաձև 3 խողովակները, որ յիշեցնում են տրուշանները, դրել են կրակի

*վրայ, նրան աւելի բորբոքելու նպատակով և սրանց մէջ ածել խունկ, որ դրուած է եղել այն կաւէ արկղիկի մէջ...»*

*Բ. Շիրակի դաշտում, Դիրաքլար գիւղի արևմտեան կողմը գտնուած կուրգանը փորել են գիւղացիները սրանից տասներկու տարի առաջ։ Այդ կուրգանում ոչ թէ պաշտուած Եզի ոսկորներն են գտել, այլ ինչպէս երևում է՝ մի քրմապետի կմախքը։ Քրմապետի վզին գտնուել է պղնձից շինուած մի հորթի գլուխ, որը ներկայումս գտնւում է Զւարթնոցի վանահայր Խաչիկ վարդապետի մօտ։ Կմախքի մօտ եղել է մի փտած գաւազան, որի պղընձէ գլուխն ու ծայրը ապացոյց են նրա այդ իշխանութեան, սրանք պահւում են մինչև օրս գիւղում, տանուտէրի մօտ։ Գաւազանի գլուխն ու ծայրը 1911 թ. Օգոստոսի 16-ին մեզ ներկայացրին գիւղացիները, որոնք պահել էին թանգարժէք գնով ծախելու նպատակով։ Գաւազանի գլուխը իր քանդակներով այնպիսի զարդ էր ներկայացնում, որ կարող էր գեղարւեստագէտի աչք հրապուրել։ Գիւղացիք պատմեցին, թէ այդտեղ գտնուել է մի պղնձէ եզի գլուխ էլ, որը տարել են Էջմիածին թանգարան գնելու նպատակով, բայց այս տարի ապրիլի սկիզբներին նոյն թանգարանում շատ փնտրեցի չգտայ։ Ոչ ոք տեղեկութիւն չունի այս մասին։*

*Ալէքսանդրապոլից Գեալին-Ղայայի բարձունքը զննողը կարող է նկատել Դիրաքլար գիւղը, որը գտնւում է երկու սրածայր և բոլորովին Եզի եղջիւրներին նման մահիկաձև լեռների մէջ տեղը։ Հեռուից դիտողն իսկոյն կարող է նկատել այդ եղջերանման լեռները, որոնք Շիրակի դաշտի արևելքից զննում են ամբողջ տարածութիւնը մինչև Ալաջաները, Եաղլուջաները, Եասնիները, Զարիշարի լեռները և Աղբաբան։ Ամեն կողմից դիտակով նայողը կարող է տեսնել այդ երկու բարձր եղջերանման լեռների մէջ այն սև բիբը, որը բռնում է Դիրաքլարի տաճարը։ Հաւանական է թւում, որ նոյնիսկ Եզի մեհեանի տեղի ընտրութեան մասին գործել է մեր պապերի միտքը և այս բնական մահիկաձև եղջիւրների մէջ են զետեղել այն Նւիրական Եզի տաճարը, որը պիտի հովանաւորէր ամբողջ Շիրակի երկրագործութիւնը և որին ամեն առաւօտ արև գալին պիտի դիտէր ամբողջ դաշտի ազգաբնակութիւնը, երեսն արևելք յարած, իր աղօթքն ու խնդրուածքը կատարէր, թախանձէր պահպանելու և աճեցնելու իր ձեռքի աշխատութիւնը, իր ամեն օրւան պարէնը, որոնցով պիտի կերակրէր իր մանր ու խոշորը։*

*Սևանայ լճի ափերից ոչ շատ հեռու Մրթբի ձորի և Շիրակի դաշտի այս երկու երևոյթները չպիտի կարողանային դրակա-*

մօտ ութ փարսախ հեռաւորութեան վրայ տարածւում է էնզէլի Ղուշչի Թերակղզին, որի բարձր լեռները սրակող իջնում են լճի ափերին և պարիսպների նման պաշտպանում Թերակղզին։ Այս Թերակղզու բնական ամրութիւնների վրայ կանգնած է Գէօ-զեարչին Ղալան—Աղաւնու բերդը, որ հին հին դարերից ի վեր մինչև վերջին ժամանակներս, որպէս անառիկ ամրոց ծառայել է երկրի իշխողներին, որոնք իրենց ընտանիքն ու գանձարանը



Ա. Աֆթանդիլեանի ձեռք քցած եզի արձանը Ղուշչի գտնուած

այդտեղ են պահպանել։ Այս բերդի պարիսպները ուսումնասիրո-ղին յիշեցնում են ինչպէս կիկլոպեան, նոյնպէս արուեստի զար-գացման և անկման բոլոր շրջանները։

Այս բերդի շրջապատում գտնուած պղնձէ, արոյրէ, պող-

պատէ նետերը, սրերն ու դաշոյնները, նոյն իսկ գնդակներն ու ռումբերը հետամտողին պատմում են յիսուն—վաթսուն դարի այն արկածները, որոնք տեղի են ունեցել այդ անառիկ գանձարանի շուրջը։ Այդ բերդում նկատելի են բազմաթիւ ապարանքների, զօրանոցների, մթերանոցների և ջրամբարների հետքերը, որոնք շինել են անյիշելի դարերից ի վեր, պարզ և սրբատաշ քա-



Ա. Աֆթանդիլեանի ձեռք բերած եզի արձանը Ղուշչի գտնուած։

րերով, աղիւսով, կրաշաղախով։ Բերդի պարիսպների դարբասներից մէկի ճակատին սրբատաշ քարերի վրայ դրոշմուած է արաբական տառերով «Աբուլ-Մուզաֆէր—Հիւսէյն Բահադուրի» անունը, որը Մեծ Շէյխ—Հասան Իլքանիի թոռը և դաժան Բեվէյսի իշխան Իլքանիի որդին էր և ապրում էր 15-րդ դարի վերջերքը— Լէնկթեմուրի աւերածութեան ժամանակ։

Այս բերդի ստորոտում, երեսը դէպի արևմուտք—Սալմասի դաշտավայրին դարձրած կանգնած է «Ղարաբաղ-քէնդը», որն իր

անունը տուել է լճակի մէջ տարածուած թերակղզուն։ Այսօրուան գիւղը իւր դիրքով և աւերակներով անցորդին ասում է, որ ինքը մի ժամանակ ամբողջ նահանգի թագուհին է եղել։ Նոյն իսկ Պասկեւիչի գաղթից առաջ, մինչև 1828 թ., այս գիւղում ապրում էին 800 տնից աւելի հայեր, որոնցից այսօր մնացել է 10 տուն։ Ունին մեծ եկեղեցի կոփածոյ—սրբատաշ քարերով շինուած, բազիլիք ծածկով։ Այս գիւղում ամեն մի քայլափոխում անցորդը տեսնում է այնպիսի հնութիւնների հետքեր, որոնք պատկերացնում են այն մեծ կուլտուրան, որը տարածուած է եղել Ուրմիայի լճի արևմտեան ափերում։

Ղարաբաղ քէնդից (գիւղից) երեք կիլոմետր տարածութեան վրայ գտնւում է Ղուշչի գիւղը և այդքան էլ հեռու է սրանից Քեաֆիր-Ղալան։ Փորձառու և զննող աչքը կարող է իսկոյն նկատել, որ այսօրուան անջատուած Ղուշչի և Քեաֆիր-Ղալա գիւղերը մի ժամանակ Ղարաբաղի հետ միացած են եղել, միայն թաթարական և արաբական աւերիչ ձեռքերն են նրանց կործանել և իրարից անջատել։

Այս Ղուշչի գիւղում—Անչալ Մահալում 1905 թուականին նորանոր բնակարաններ կառուցանելու համար հիմքեր փորելիս, բացուեց մի փոքրիկ մեհեան, սրբատաշ խոշոր և կարծր քարերից շինուած։ Շինութիւնը փլուած է, բայց պատերը ցոյց են տալիս—հաւանականաբար, թէ նա էլ բազիլիքի ծածկ է ունեցել։ Անյիշատակ դարերից ի վեր այս մեհեանը մնացել է աւերակների և հողի տակ, որի մէջ, սրբատաշ քարի պատուանդանի վրայ գըտնուեցան երկու արոյրէ արձաններ։

Արձանները մէկը միւսից միայն մի սանտիմետր ցածր էր և այդքան կարճ, որով կարելի է ենթադրել, թէ մէկը ցուլի է— միւսը՝ զուգէ եզի։ Երկուսի էլ կազմն այնքան իրար նման են, որ բոլորովին իրարից տարբերել չէ կարելի։ Գլխներն այնպիսի քանդակներով զարդարուած են և այնպիսի գեղարուեստական կազմ ունին, որ ինքնին խօսում են զննողին և յայտնում, թէ իրենք եղել են դարերով պաշտամունքի առարկայ։

Այս արձանները գտնուելով քարէ բարձր պատուանդանի վրայ, ծածկուած լինելով մեծ մեծ քարէ ծածկոյթով, զերծ են մնացել խոնաւութիւնից և չեն ենթարկուել փտութեան։ Անգութ և ագէտ գտնողները, արձանների արտակարգ ծանրութիւնը համարում են ոսկու գանձի նշան և վայրենաբար դարբնի մուրճի հարուածների տակ փշրում են երկուսն էլ։ Բարեբախտաբար շուտով վրայ են հասնում գիւղի տէրերը և փշրանքն ազատում են այդ ագէտների ձեռքից, որոնք, երկիրը կուռքի մանրունքի ներ-

կայութիւնից ազատելու համար, պատրաստուած են եղել ծովը թափելու արձանների փշրանքները։

Արձանների երկուսի էլ գլուխը չեն փշրուած, ամբողջապէս կան, մինը ներկայիս գտնւում է Թիֆլիսում Մաջիդ-Սալթանէի թանգարանում, միւսը, որ մի ժամանակ նուէր էր ղրկուած Մահմէդ-Ալի-միրզա էքս-շահին, վերջերս աճուրդից գնել էր Արս. Աֆթանդիլեանը և տարաւ Եւրոպա վաճառելու։



Մէջիդ-Սալթանէի ձեռք բցած ցուլի արձանը Ղուչչի գտնուած։

Անշուշտ այս արձանները կենդանի վկայ են Եզի—պաշտամունքին մեր երկրում, որոնք ապացուցանում են, թէ մեր աշխարհի ամէն մի գաւառավայրում երկրագործութեան հովանաւոր Ապիսը ունեցել է իր մեհեանը։ Հողագործութիւնը — հացահատիկների մշակութիւնը որքան որ հին է և իւր արմատները գըցած է մեր երկրում, Եզի — պաշտամունքն էլ նրա հետ զուգընթաց է երևում։

Անշուշտ այս կատարելութեան հասած արձանագործութիւնն իր անցեալն ու զարգացման աստիճանները պիտի ունենայ։ Այստեղ ներկայացուած Եզի բրոնզէ արձանների գլխները այնպիսի գեղարուեստական նրբութիւն ու ճշտութիւն են ներկայացնում, որ չի կարելի ենթադրել, թէ այդ արձաններն իրենց անցեալ զարգացման պատմութիւնը չունենան։

Եզի պաշտամունքը, ինչպէս երևում է թէ այս արձաններից և թէ Սևանայ լճի ափերին մօտ եղած պեղումներից, պէտք է գոյութիւն ունենար մեր երկրում մեզանից 40—45 դար առաջ։ Նա որպէս ժամանակակից եգիպտական Ապիսի, իր ծագումն ու զարգացումն ստացել է նրա հետ միաժամանակ։ Ինչպէս երևում է, Հայաստանում աւելի կարճ է տևել Ապիսի պաշտամունքը, քան թէ Եգիպտոսում, քանի որ Եգիպտոսի Ապիսի պաշտամունքի մասին խօսել է Հերոդոտը և Հայաստանի վերաբերմամբ լռել պատմագիրների հայրը։

*Դ. Ղուշչիի աւերակների մէջ գտնուած եզի արձանների հետ գտնուած են նոյնպէս մի պաշտամունքի հասած Ապիսի մումիացրած կմախք, որը տարաբաղդաբար փշրուած ու թափուած է ծովը։ Այդտեղ գտնուած է մի բրօնզէ օձ, որը պահում է կալուածատիրոջ մօտ, արծաթի ամաններ, և ուրիշ մաշուած ու քրքըրուած զարդեր։*



*Մէջլիդ-Սալթանէի ձեռք քցած գօտու կտորը, Ղուշչի գտնուած։*

*Ե. Այս զարդերի մէջ ամենաէական տեղը բռնում է մի գօտի—կամար, պղնձից, որի վրայ քանդակուած են շարք-շարք երեք առիւծ և երեք «եզ»։ Այս գօտու վրայ նկարուած են կարծես թռչող ցուլեր, որոնք սաւառնում են օդի մէջ։ Այնքան արագ են թռչում ցուլերը, որ նրանց հետամտող առիւծները յետ են մնացել և չեն կարողանում հասնել իրենց հալածած ցուլերին։*

*Անշուշտ այս գօտին ապացոյց է որ նա ծառայել է Ապիսի մեհեանի քրմապետին, որը կրելով այդ զարդը, ամրապնդել է իր մէջքը կռուելու բնութեան աւերիչ և կործանիչ տարրերի դէմ, որպէսզի երկրում ամեն կողմ հաստատէ երկրագործութիւնը, երկրամշակութեամբ ամրացնէ հողի և մշակողի մէջ եղած կապը և թափառական տարրերին, խաշնարածներին ու որսորդներին հաստատաբնակ դարձնէ։*

*Ցուլերի մէջ կանգնած են ոսկեհատ, գոհարահատ հացահատիկների արտերը, որոնց մէջ քանդակագործը դրել է իր խորհրդաւոր մտքերը։ Բայց կործանարար ժամանակը տարաբաղդաբար մաշել, քրքրել և այնպէս է փշրել այդ գօտու պղնձի զարդարանքները, որ նրա վրայ քիչ բան է մնացել մեզ լուր հասցնելու մեզ-*

նից քառասուն դար առաջ ապրողների մոքերի, խորհուրդների և ձեռակերտների մասին։

Ղարաբաղ Թերակղզին Ուրմիայի լճի մէջ այնպիսի դիրք է գրաւել անյիշատակելի ժամանակներից, որ նրա ուսումնասիրութեան համար արժէ մեծ գոհողութիւններ կատարել և պարզել, թէ ինչ պարագաներ են ծնունդ տուել ինչպէս Ապիսի կուլտին, նոյնպէս այն մեծ փիլիսոփայ Զրադաշտին, որի վարդապետութեան հետևեց Իրանը աւելի քան քսան դար։

Վանի լճի հիւսիսային ափերում—Արճէշի գաւառում և դաշտում նոյնպէս մի մեհեանում գտնուած է մի արոյրէ արձան, որն իբր թէ ծախուել է ճանապարհորդ անգլիացիների, բայց քանի որ այս մասին գրական փաստ չըկայ, չենք կարող հաւաստիացումներ տալ ընթերցողին, մինչև աւելի մանրամասնութիւններ ձեռք բերելը։



Ախալքալակի Վարգիա գիւղի շրջակայքում գտնուած եզի արձանը, որ ձեռք է բերել Ց. Բայբուրդցեանը։

Է. Ախալցխայում պ. Ց. Բայբուրդցեանը ձեռք է բերել մի ցուլի բրոնզէ արձան, որը 10 սանտիմետր երկարութիւն և 7 սանտիմետր բարձրութիւն ունի։ Այս արձանի գլուխն ու եղջիւրները որքան որ գեղեցիկ են, այնքան կոպիտ է մարմինը, մանաւանդ ոտքերը։ Արձանը ծախողները ասել են, որ գտել են Ախալքալաքի մօտ Վարգիա գիւղի շրջանում։ Առաջին հայեացքից նկատելի է, որ այդ Ապիսի արձանն էլ ձուլուել է պաշտամունքի առարկայ դառնալու համար։ Առաջին հայեացքից այդ արձանի գլուխը, դունչը, մանաւանդ մահիկաձև եղջիւրներն ասում են, որ իրենք ժողովրդի պաշտամունքի առարկայ են եղել դարերով։ Ինչպէս այսօր ամեն տուն սրբերի պատկերներին մի անկիւն է նուիրում, երկրամշակութեան կազմակերպութեան առաջին դարուն էլ ամեն երկրագործի օջախի գլխին բազմեցրած են եղել եզի արձանը, որը հովանաւորում էր տան անասուններին, արտերն ու բոստանները։

Ը. Խօսելով մեր աշխարհում գոյութիւն ունեցած Եզի պաշտամունքի մասին, չենք կարող լռութեան տալ աւանդաբար մեզ հասած այն պաշտամունքները, որ շարունակւում են մինչև մեր օրերը։ 1864 թուականին ճանապարհորդական յատուկ արշաւանքից յետոյ, վերջապէս Շաբանեան Կարապետը Սղերդի մի վանքում գնում է մի սպիտակ գոմէշ, որը ոտքից մինչև գլուխ ոչ մի սպի չունէր։ Այս գոմէշի նոյն իսկ սմբակները և եղջիւրները բոլորովին սպիտակ են եղել և անասունը վանքի մէջ պաշտամունքի առարկայ։ Այս գոմէշի մազերից ժողովուրդը հատ հատ տանում էր դցում իր ալիւրի ամբարը, որպէս զի իր շտեմարանի հացն անպակաս լինի։ Նրա կերը մատակարարում էր ամբողջ գաւառը իր ընտիր բերքերից։

Այս գոմէշը կառավարական ոյժով, մանաւանդ ֆրանսիական ոսկիների ձգումով Շաբանեանը հազիւ կարողացել էր դուրս բերել վանքից, որտեղ անասունն ունէր իր յատուկ ախոռն ու մսուրը, որին մաքրութեան և փափկութեան մէջ խնամելիս են եղել ինչպէս վանականները, նոյնպէս և նրան նուիրուած կիները։

Ինչպէս պատմում են, գոմէշն ունեցել է իր յատուկ սպասաւորների ավխան, որոնք նոյն իսկ լողացնում անուշահոտ իւղերով անասունին օծելիս են եղել պարբերաբար։ Այս գոմէշը, որ գնուած էր ֆրանսիական կառավարութեան յատուկ պահանջմամբ, այդ թուականին ուղարկուած է Փարիզ, որի մասին ինչ ինչ ծանօթութիւններ տպագրուած են Journal Asiatique-ի նոյն թուականի մէջ։

Թ. Սպիտակ Եզ պահւում էր մինչև վերջին դարը Մշու Առաքելոց վանքում, Մակուի ս. Թադէոսի վանքում, Վանի վանքերում,, բայց կղերի կողմից աւելորդապաշտութիւն և հեթանոսական կռապաշտութիւն նկատուելով, միշտ աքնել են խուսափել և ծածկել ինչպէս մեծաւորների, նոյնպէս գիտակիցների աչքերից նոյնիսկ Madame Dieulafoy-ն իր ճանապարհորդութեան նկարագրութեան մէջ արձանագրում է և պատկերը տալիս է մեր ստորև ներկայացրած եպիսկոպոսի սև եզի, որը Նոր—Ջուղայի—Սպահանի վանքում պաշտամունքի առարկայ է եղել սրանից 32 տարի առաջ։ Անշուշտ եպիսկոպոսի եզը չէր կարող Ապիսի փառքն ունենալ, բայց վանքերի մէջ ցուլերի բռնած դիրքի շարունակութիւնը կարող է տեսնել ամեն մի ուսումնասիրող։ Եթէ հայրենի երկրում հայերի վանքերում սպիտակ ցուլն ու գոմէշը պաշտամունքի առարկայ են մնացել մինչև Ի-րդ դար, եթէ այդ պաշտամունքը մեր վանականները տարել են մինչև Սպահան երեք դար առաջ, անշուշտ այս մի այնպիսի սովորոյթի աւանդական

շարունակութիւնն է, որ յիշեցնում է շատ ու շատ հին դարերի պաշտամունքներ։

ԺԱ. Այս պարագայից աւելի պիտի գերադասել հայ գիւղացու սովորական վարմունքը իր լծակից եզի հետ։ Ո՞վ չի լսել գիւղացու ամեն բոպէ եզին կրկնած փաղաքշանքը.—Ախպէր ջա՛ն, բաբա ջա՛ն, ընկեր ջա՛ն, խօսքերը։ Ո՞վ չի տեսել այն սուգն ու շիւանը ընկած եզի պատճառով։ Լծկան եզը ծերանալիս, գիւղացին նրա վզին դանակ չի քաշիլ, նա անճարացած կը տանի և կը փոխէ աչառների հետ։

Շատ անգամ նկատուած է, որ լծկանին փորձանք պատահելիս, փոխանակ դանակ քաշելու, վիզը կտրելու, որ կարողանան հանդարտ խղճով միսն ուտել, գիւղացին նախապատուել է զրկելու այդ մսացուից և տարել է եզն արտի մէջ հորել։